Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք

ՀԿ(բ)Պ ԿԵՆՏԿՈՄԻ
ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ ԵՎ
ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ

# ԱԳԻՏԱՏՈՐԻ ԲԼՈԿՆՈՏ

## № 5 (48)

«ՍՈՎԵՏԱԿԱՆ ՀԱՅԱՍՏԱՆ» ԹԵՐԹԻ
ՀՐԱՏԱՐԱԿՉՈՒԹՅՈՒՆ
1946



# Ի. Վ. ՍՏԱԼԻՆԻ ԵՐԿԵՐԻ ՀՐԱՏԱՐԱԿՄԱՆ ՄԱՍԻՆ

*Համամիութենական Կոմունիստական (բոլշևիկների) Պարտիայի Կենտրոնական Կոմիտեի որոշմամբ լույս է տեսնում Ի. Վ. Ստալինի Երկերի առաջին հրատարակությունը։*

*Ներկա հրատարակությունը պարունակում է Ի. Վ. Ստալինի 1901 թվից մինչև 1946 թ. գրած աշխատությունները։ Ամբողջ հրատարակությունը բաղկացած է 16 հատորից և լույս կընծայվի քաղաքական գրականության Պետական հրատարակչության կողմից 1946—1948 թվերի ընթացքում։*

*Երկերի առաջին երեք հատորը լույս կտեսնեն ընթացիկ 1946 թվին։*

*Առաջին հատորի մեջ մտնում են՝ 1901 թվից մինչև 1907 թվականի ապրիլը գրված աշխատությունները։*

*Երկրորդ հատորը պարունակում է 1907-ից մինչև 1913 թ. ներառյալ գրված աշխատությունները։*

Երրորդ հատորը կազմում է Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի նախապատրաստման շրջանին վերաբերող գործերը (1917 թվականի մարտ—հոկտեմբեր)։

Չորրորդ հատորում (1917 թ. նոյեմբեր—1920 թ.) տպագրվում են այն աշխատությունները, որոնք գրված են Սովետական իշխանության գոյության առաջին ամիսներին և օտարերկրյա ռազմական ինտերվենցիայի ու քաղաքացիական կռիվների շրջանում։

Հետևյալ երեք—հինգերորդ, վեցերորդ, յոթերորդ— հատորները ընդգրկում են այն երկերը, որոնք վերաբերում են ժողովրդական տնտեսության վերականգնման համար սովետական պետության խաղաղ աշխատանքի անցնելու ՝ժամանակաշրջանին (1921—1925 թ. թ.)։ Հինգերորդ հատորը պարունակում է 1921 թվից մինչև Վ. Ի. Լենինի մահը (1924 թ. հունվար) գրված երկերը։ Վեցերորդ հատորի մեջ մտնում են 1924 թվականին վերաբերող երկերը։ Յոթերորդ հատորը ամփոփում է 1925 թվականին գրված աշխատությունները։

Ի. Վ. Ստալինի՝ սոցիալիստական ինդուստրիալիզացիայի համար մղված պայ-



քարի ժամանակաշրջանի (1926—1929 թ. թ.) աշխատությունները կազմում են՝ ութերորդ, իններորդ, տասներորդ, տասնմեկերորդ և տասներկուերորդ հատորները։ Ութերորդ և իններորդ հատորները բովանդակում են 1926 թվականի հոդվածներն ու ճառերը, զեկուցումներն ու ելույթները, տասերորդ և տասնմեկերորդ հատորները— 1927 թ., տասներկուերորդը՝ 1928—1929 թվականներին։

Տասներեքերորդ հատորը պարունակում է 1930—1933 թվականների երկերը, որոնք գլխավորապես նվիրված են գյուղատնտեսության կոլեկտիվացման և սոցիալիստական ինդուստրիալիզացիայի հետագա զարգացման հարցերին։

Տասնչորսերորդ հատորը ընդգրկում է 1934—1940 թվականների երկերը, որոնք նվիրված են ՍՍՌՄ-ում սոցիալիզմի կառուցման ավարտման համար մղված պայքարին, Սովետական Միության նոր Կոնստիտուցիայի ստեղծմանը, երկրորդ համաշխարհային պատերազմի սկզբի իրադրության մեջ հանուն խաղաղության մղված պայքարին։

Տասնհինգերորդ հատորի բովանդակությունը կազմում է Ի. Վ. Ստալինի՝ «Համ.

Կ(բ)Պ պատմություն: Համառոտ դասընթաց» աշխատությունը, որը 1938 թվականին լույս է տեսել առանձին հրատարակությամբ:

Տասնվեցերորդ հատորը պարունակում է Հայրենական Մեծ պատերազմի ժամանակաշրջանի երկերը — Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի տարեդարձերի օրերին Ի. Վ. Ստալինի տված զեկուցումները, ելույթները և հրամանները, Գերմանիայի և Ճապոնիայի ջախջախման և կապիտուլյացիայի կապակցությամբ ժողովրդին ուղղած դիմումները և այլ փաստաթղթեր:

Հատորների մեջ բոլոր աշխատությունները տեղավորված են ժամանակագրական կարգով՝ նրանց գրված կամ հրապարակված լինելու ժամանակի համեմատ: Յուրաքանչյուր հատորին կցված են՝ առաջաբան, տեղեկանքային բնույթի համառոտ ծանոթագրություններ և կենսագրական խրոնիկա:

Ի. Վ. Ստալինի Երկերը տպագրվում են 500 հազար օրինակ տիրաժով:

Հրատարակության տիրաժը պետք է տարածվի անհատական բաժանորդագրության միջոցով: Պետական հրատարակչությունների գրավաճառանոցային միավորումը (КОГИЗ) փետրվարի 1-ից սկսում է Ի. Վ.



Ստալինի Երկերի բաժանորդագրության ընդունումը:

Բաժանորդագրության պայմաններն են՝ յուրաքանչյուր հատորի գինն է 6 ռուբլի: Բաժանորդագրությունը ընդունվում է պետական հրատարակչությունների գրախանութների կողմից:

Ի. Վ. Ստալինի Երկերի լույս տեսնող առանձին հատորների տիրաժի մի մասը կտրվի հատավաճառի՝ գրախանութների միջոցով:

***

Ի. Վ. Ստալինի Երկերի մոտ ժամանակներս հրատարակվելիք առաջին հատորը պարունակում է 1901 թվից մինչև 1907 թվականը գրված աշխատությունները:

Այդ ժամանակաշրջանում ընկեր Ստալինը հակամարքսիստական և օպորտունիստական զանազան հոսանքների դեմ մղած պայքարում ստեղծում է Անդրկովկասի լենինյան-իսկրայական, բոլշևիկյան կազմակերպությունները և ղեկավարում նրանց գործունեությունը: Իր աշխատություններում նա հիմնավորում և պաշտպանում է մարքս-լենինյան ուսմունքի հիմնական սկզբունքները:

Հատորը բացվում է 1901 թվականին գրը-

ված երկու հոդվածներով։ «Խմբագրության կողմից» առաջնորդող հոդվածում, որը նվիրված է վրացական ռևոլյուցիոն մարքսիստների խմբի կողմից հրատարակվող վրացական առաջին անլեգալ «Բրձոլա» («Պայքար») թերթի հրատարակմանը, բացահայտվում է անլեգալ մամուլի, պրոլետարիատի ռևոլյուցիոն պայքարի զենքի նշանակությունը։

«Ռուսական սոցիալ-դեմոկրատական պարտիան և նրա մոտակա խնդիրները» հոդվածում ցույց է տրվում ուտոպիստական սոցիալիզմի սնանկությունը, քննադատության են ենթարկվում արևմտա-եվրոպական ռեֆորմիստները — բեռնշտեյնականները և Ռուսաստանում նրանց հետևորդները՝ «էկոնոմիստները» և հիմնավորվում է ուժեղ և կուռ համախմբված ռևոլյուցիոն մարքսիստական պարտիայի անհրաժեշտությունը։ Հոդվածի մեջ նշվում են պարտիայի մոտակա խնդիրները՝ ցարական ինքնակալության դեմ պրոլետարիատի մղած քաղաքական պայքարի ղեկավարության ուղղությամբ։

«Սոցիալ-դեմոկրատիան ինչպես է հասկանում ազգային հարցը» հոդվածում (1904 թ.) տեսական հիմնավորում և պարզաբանում է տրվում ազգային հարցի վերաբեր-



յալ մարքսիստական ծրագրին, մերկացվում է վրացական ֆեդերալիստների — սոցիալ-դեմոկրատների և Անդրկովկասի մյուս նացիոնալիստական խմբակների բուրժուական նացիոնալիզմը։ «Պրոլետարների դասակարգը և պրոլետարների պարտիան» հոդվածը (1905 թ.) նվիրված է պարտիայի մասին լենինյան ուսմունքի և հատկապես պարտիայի կանոնադրության առաջին կետի լենինյան ձևակերպման պաշտպանությանը։

«Համառոտակի պարտիական տարաձայնությունների մասին» բրոշյուրում (1905 թ.), «Պատասխան սոցիալ-դեմոկրատին» հոդվածում և «Նամակներ Քութայիսից»-ում պաշտպանվում և զարգացվում են Լենինի «Ի՞նչ անել» գրքի հիմնական գաղափարները — սոցիալիստական իդեոլոգիայի դերն ու նշանակությունը բանվորական շարժման մեջ։ Այդ աշխատություններում տրվում է մարքսիստական պարտիայի գաղափարական հիմունքների հանրակողմանի լուսաբանությունը։

Հատորի մեջ մտնում են մի շարք աշխատություններ, որտեղ զարգացվում են 1905 թվականի ռուսական առաջին ռևոլյուցիայի ժամանակաշրջանում պարտիայի վարած տակտիկայի հարցերը։ Դրանցից են՝ «Զին-

ված ապստամբությունը և մեր տակտիկան», «Ժամանակավոր ռևոլյուցիոն կառավարությունը և սոցիալ-դեմոկրատիան» հոդվածները, «Երկու ընդհարում» բրոշյուրը և այլն:

Հատորի մեջ մտնում են «Ագրարային հարցը» և «Ագրարային հարցի առթիվ» (1906 թ.) հոդվածները և ՌՍԴԲՊ 4-րդ Միավորիչ համագումարում արտասանած «Ագրարային ծրագրի վերանայման մասին» ճառը:

ՌՍԴԲՊ 4-րդ Միավորիչ համագումարի արդյունքներին է նվիրված «Ժամանակակից մոմենտը և բանվորական պարտիայի միավորիչ համագումարը» (1906 թ.) բրոշյուրը:

Մի շարք հոդվածներում՝ «Դասակարգային պայքարը», «Գործարանային օրենսդրությունը և պրոլետարական պայքարը» (1906 թ.) և այլն՝ լուսաբանվում է պրոլետարիատի դասակարգային պայքարում պարտիայի և պրոֆմիությունների դերի հարցը:

Հատորի մեջ մտնում են նաև Անդրկովկասի բոլշևիկյան կազմակերպությունների անունից Ի. Վ. Ստալինի գրած պրոկլամացիաները: Այդ պրոկլամացիաների մեջ առաջ են քաշվում՝ ինքնակալության և ճոր-



տատիրության մնացորդների դեմ զինված ապստամբության միջոցով ռևոլյուցիոն պայքարի ելնելու կոչերը:

Առաջին հատորը ավարտվում է «Անարխի՞զմ, թե՞ սոցիալիզմ» (1906—1907 թ. թ.) աշխատությամբ, որի մեջ լուսաբանվում են մարքսիստական պարտիայի գաղափարական հիմունքները—դիալեկտիկական և պատմական մատերիալիզմը, սոցիալիստական ռևոլյուցիայի և պրոլետարիատի դիկտատուրայի հարցերը, մարքսիստական պարտիայի, որպես բանվոր դասակարգի քաղաքական ղեկավարի նշանակությունը:

Առաջին հատորի մեջ մտած աշխատությունների գերակշռող մասը հրապարակված է եղել վրացական անլեգալ և լեգալ ռևոլյուցիոն մամուլում: Այդ աշխատությունների մեծամասնությունը ռուսերեն լեզվով հրապարակվում է առաջին անգամ:

Երկերի առաջին հատորին կցված է հեղինակի առաջաբանը:

Ի. Վ. Ստալինի Երկերի լույս ընծայումը կարևոր իրադարձություն կլինի մեր պարտիայի գաղափարական կյանքում:

Ընկեր Ստալինի աշխատություններում ընդհանրացված է մեր երկրում սոցիալիստական ռևոլյուցիայի հաղթանակի և սոցիա-

նիստական հասարակակարգի կառուցման, սովետական պետության ստեղծման և ամրապնդման համար բոլշևիկյան պարտիայի մղած պայքարի պատմական վիթխարի փորձը։ Ընկեր Ստալինի աշխատություններում զարգացվել և նոր փորձով հարստացվել է մարքսիստական-լենինյան տեսությունը։

Ընկեր Ստալինի Երկերը լուրջ օգնություն ցույց կտան պարտիական կադրերին և սովետական ինտելիգենցիային՝ բոլշևիկյան պարտիայի պատմության և տեսության ուսումնասիրության, հասարակական կյանքի զարգացման օրենքների և կոմունիստական հասարակակարգի կառուցման ուղիների մասին մարքսիստական-լենինյան գիտությանը տիրապետելու գործում։

ՀԱՄԿ(Բ)Պ ԿԵՆՏԿՈՄԻՆ ԿԻՑ ՄԱՐՔՍԻ-ԷՆԳԵԼՍԻ-ԼԵՆԻՆԻ ԻՆՍՏԻՏՈՒՏ





# ԿԱՆԱՆՑ ՄԻՋԱԶԳԱՅԻՆ ՕՐԸ

Այս տարի կանանց մարտական ուժերի ստուգատեսի օրը—մարտի 8-ը մեր երկրի կանայք նշում են այն պահին, երբ սովետական ժողովուրդները ավարտելով Հայրենական մեծ պատերազմը, վերսկսել են իրենց խաղաղ-ստեղծագործ աշխատանքը։

Երկրորդ համաշխարհային պատերազմը, որը մեր Հայրենիքի պատմության մեջ վերապրած պատերազմներից ամենածանրն ու ամենադաժանն էր, մեր ժողովրդի բոլոր ուժերի փորձության և ստուգման մեծ դպրոց դարձավ։

Այդ ահեղ և վիթխարի պատերազմում սովետական ժողովուրդը դուրս եկավ հաղթող։ Այդ է հենց պատերազմի գլխավոր արդյունքը։ «Բայց դա շատ ընդհանուր արդյունք է, և մենք չենք կարող այստեղ վերջակետ դնել»։—Ասում է ընկեր Ստալինը 1946 թվի փետրվարի 9-ին իր պատմական ճառում։

Մեր հաղթանակը նշանակում է, որ հաղթեց մեր սովետական հասարակակարգը, հաղթեց մեր սովետական պետական կարգը և հաղթեցին մեր զինված ուժերը, մեր Կարմիր Բանակը։

«Սխալ կլիներ մտածել, թե կարելի է այդպիսի պատմական հաղթանակի հասնել առանց ամբողջ երկիրը նախապես ակտիվ պաշտպանության նախապատրաստելու» (Ստալին)։

Պատերազմին նախորդող Ստալինյան երեք հնգամյակների տարիները չտեսնված չափերով բարձրացրին մեր Հայրենիքի հզորությունը։ Այդ տարիներին տիտանական քայլերով աճեց մեր ծանր ինդուստրիան, ծաղկեց ու ամրապնդվեց մեր կոլխոզային գյուղատնտեսությունը։

Ինդուստրացման և կոլեկտիվացման Ստալինյան հանճարեղ պլանի փայլուն իրագործումը հնարավորություն տվեց պարտիային և ժողովրդին էլ ավելի ուժեղացնել մեր Կարմիր Բանակը և այն դարձնել հզոր ու անպարտելի։

Ֆաշիստական ռեակցիայի և խավարամտության մութ ուժերի դեմ պրոգրեսիվ ժողովուրդների մղած պայքարի մեծ գործում մեր բանվորուհիները, կոլխոզնիկուհիները,



մտավոր աշխատանքի կանայք մտցրին իրենց անգնահատելի ավանդը։

Արտադրության և գյուղատնտեսության մեջ փոխարինելով ռազմաճակատ մեկնած տղամարդկանց, սովետական կանայք հերոսական աշխատանք կատարեցին թիկունքում և դրանով իսկ մեծ չափով նպաստեցին հաղթանակի գործին։

Գերմանական և ճապոնական զավթիչների դեմ տարած պատմական մեծ հաղթանակի կազմակերպիչն ու ոգեշնչողը եղավ Լենինի-Ստալինի պարտիան, որը մասսաների գլուխ անցած, իր մեծահանճար առաջնորդ և ուսուցիչ ընկեր Ստալինի ղեկավարությամբ սովետական ժողովրդին վճռական գրոհի տարավ մինչև ատամները զինված թշնամիների դեմ և հաղթող դուրս եկավ։

## Ի՞ՆՉ ՏՎԵՑ ԿՆՈՋԸ ՀՈԿՏԵՄԲԵՐՅԱՆ ՄԵԾ ՌԵՎՈԼՈՒՑԻԱՆ

Որպեսզի պարզ լինի, թե ինչ է տվել կնոջը Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիան, անհրաժեշտ է հիշել կնոջ ծանր վիճակի մասին՝ ցարական Ռուսաստանում։

Եթե ցարական Ռուսաստանում բանվորներն ու գյուղացիները քաղաքական իրավունքներ չունեին, ապա ավելի քան իրավազուրկ էին աշխատավոր կանայք, որոնց ցարական օրենքները լրիվ կախման մեջ էին դնում ամուսնուց։

Ահա թե ինչ է ասել ընկեր Ստալինը գյուղի կնոջ ծանր անցյալի մասին.

«Ինչպես, եթե պատկերացնենք, թե կանայք իրենցից ինչ էին ներկայացնում անցյալում, հին ժամանակ։ Քանի դեռ կինը աղջիկ էր, նա համարվում էր, այսպես ասած, աշխատավորներից վերջինը։ Աշխատում էր նա հոր համար, աշխատում էր առանց ձեռները ծալելու, և հայրը դեռ կշտամբում էր. «Ես քեզ կերակրում եմ»։ Երբ նա ամուսնացած էր, նա աշխատում էր ամուսնու համար, աշխատում էր այնպես, ինչպես նրան ստիպում էր աշխատել ամուսինը, և ամուսինն էլ նորից նրան կշտամբում էր. «Ես քեզ կերակրում եմ»։ Կինը գյուղում աշխատավորներից վերջինն էր»։

Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիան լրիվ չափով ազատագրեց աշխատավոր կանանց և տվեց նրանց քաղաքական լայն իրավունքներ, իրավահավասար սովետական քաղաքացիներ դարձրեց, ո-



րոնք հնարավորություն ստացան ակտիվ կերպով մասնակցելու երկրի կառավարման գործին, ծավալելու և զարգացնելու իրենց ընդունակությունները մեր բազմաբովանդակ կյանքի բոլոր բնագավառներում։

Սովետական կնոջ իրավահավասարության մասին գրի է առնված Ստալինյան Կոնստիտուցիայում։ Կոնստիտուցիայի № 122 հոդվածում ասված է.

«Կնոջը ՍՍՌՄ-ում տղամարդուն հավասար իրավունքներ են տրվում տնտեսական, պետական, կուլտուրական ու հասարական-քաղաքական կյանքի բոլոր բնագավառներում»։

Այժմ մենք հպարտությամբ կարող ենք նշել, որ մեր հասարակական կյանքում չկա մի ասպարեզ, որտեղ չլինեն կանայք։

Բազմաթիվ կանայք աշխատում են մեր Սովետներում՝ սկսած գյուղական սովետներից վերջացրած ՍՍՌՄ Գերագույն Սովետով։ Տեղական Սովետներում ընտրված են ավելի քան 450 հազար կանայք։ Միութենական և ինքնավար ռեսպուբլիկաների Գերագույն Սովետների դեպուտատներ են 1.700 կանայք։

Մեզ մոտ Հայաստանում տեղական Սովետներում աշխատում է 3.681 կին, ռես-

պուբլիկայի Գերագույն Սովետում 61 կին։ Վերջին ընտրությունների ժամանակ ՍՍՌՄ Գերագույն Սովետի կազմում ընտրվեցին, որպես դեպուտատներ մեր երկրի առաջավոր կանանց լավագույն ներկայացուցիչները՝ ՍՍՌՄ ժողովրդական արտիստուհի Հ. Դանիելյանը, ստախանովական բանվորուհի Ա. Գյոկչյանը, կոլխոզային գյուղի առաջավոր կանայք՝ Ռեբեկա Ղարիբյանը, Նազանի Գալստյանը և Իջևանի պարտշրջկոմի քարտուղար՝ Նունիկ Թուխիկյանը։

## ԱՇԽԱՏԱՆՔԻ ԻՐԱՎՈՒՆՔ

Կինը կարող է աշխատել, սովորել, ղեկավարել պետությունը, մշակել գիտական և տեխնիկական պրոբլեմներ, որովհետև նրան մեր երկրում տղամարդուն հավասար իրավունք է տրված՝ աշխատանքի, հանգստի, նյութական ապահովության, կրթության բնագավառներում։

1932 թվին ժողովրդական տնտեսության մեջ կանայք ընդգրկված էին 27,4 տոկոսով, 1940 թվին այդ տոկոսը հասավ 38,4-ի, որը կազմում է ավելի քան 11 միլիոն մարդ։

Ստալինյան հնգամյակների տարիներին



կանայք աշխատել սկսեցին արդյունաբերության այնպիսի ճյուղերում, որտեղ առաջ գործադրվում էր միայն տղամարդու աշխատանք և տիրապետեցին այնպիսի մասնագիտությունների, որոնք նախկինում գերազանցապես կատարում էին տղամարդիկ։

Ոչ մի երկրում շոգեքարշային կին-մեքենավար չկա։ 1940 թ. մեզ մոտ ավելի քան 4 հազար կանայք գնացքներ էին վարում։

Պատերազմի նախօրյակին մետաղարդյունաբերության բանվորների 25 տոկոսը կանայք էին։

Կանայք համարձակորեն առաջ են քաշվել ղեկավար աշխատանքի։ Մոտ 100 կին աշխատում են որպես գործարանների, ֆաբրիկաների, նավթահորերի դիրեկտորներ։

Մեր ռեսպուբլիկայի արդյունաբերության մեջ աշխատողների 44,3 տոկոսը կանայք են։

Գյուղատնտեսության մեջ աշխատող կանանց տոկոսը հասնում է 63-ի։

Կոմունալ ձեռնարկություններում աշխատող կանայք կազմում են 61,5 տոկոս, հասարակական սննդի բնագավառում՝ 71,3 տոկոս, կապի գծով՝ 52,9 տոկոս, գիտահետազոտական հիմնարկներում՝ 51,3 տոկոս,

առողջապահության ասպարեզում՝ 58,1 տոկոս և այլն։

Այս թվերը վկայում են սովետական կնոջ ակտիվության աճը մեր հասարակական-քաղաքական կյանքի ամենատարբեր ճյուղերում։

Մենք հպարտությամբ ենք արտասանում մեր բազմաթիվ կին գիտնականների, արվեստագետների, բժշկուհիների, ինժեներուհիների, գյուղատնտեսուհիների անունները։

## ԿՐԹՈՒԹՅԱՆ ԻՐԱՎՈՒՆՔ

Սովետական պետությունը ցարիզմից ժառանգություն ստացավ կնոջ համատարած անգրագիտությունը։ Բոլշևիկյան պարտիան և սովետական կառավարությունը վիթխարի աշխատանք ծավալեցին մեր բնակչության անգրագիտության և կիսագրագիտության լիկվիդացիայի ուղղությամբ։

Անգրագիտությունը, այդ թվում և կանանց անգրագիտությունը, մեր երկրում լրիվին վերացված է։ ՍՍՌՄ-ում մտցված է պարտադիր տարրական կրթությունը քաղաքում և գյուղում և պարտադիր յոթնամյա կրթությունը՝ քաղաքում։



«...Կանայք կազմում են մեր երկրի բնակչության կեսը, նրանք կազմում են աշխատանքի հսկայական բանակ, և նրանք կոչված են դաստիարակելու մեր երեխաներին, մեր ապագա սերունդը, այսինքն՝ մեր ապագան։ Ահա՛ թե ինչու մենք չենք կարող թույլ տալ, որ աշխատավորների այդ հսկայական բանակը քարշ տա իր գոյությունը խավարի ու տգիտության մեջ։ Ահա՛ թե ինչու մենք պետք է ողջունենք աշխատավոր կանանց աճող հասարակական ակտիվությունը և ղեկավար պոստերի համար նրանց առաջ քաշելը, որպես մեր կուլտուրականության աճման անկասկածելի նշան» (ՍՏԱԼԻՆ, «Լենինիզմի հարցերը», էջ 562)։

Սովետական կինը ձգտում է բարձրագույն կրթություն ստանալ։ Պատերազմից առաջ ՍՍՌՄ-ում բարձրագույն ուսումնական հաստատություններում սովորողների 50 տոկոսը կանայք էին։ Հարյուրավոր կանայք այժմ ղեկավարում են բարձրագույն դպրոցների տարբեր ամբիոններ։ Մեզ մոտ կան Գիտությունների Ակադեմիայի իսկական անդամներ և անդամ-թղթակիցներ. գիտահետազոտական ինստիտուտներում, լաբորատորիաներում աշխատում են 33 հազար կին գիտաշխատողներ։ Ստալինյան

մրցանակի լաուրեատների թվում մենք ունենք ավելի քան 50 կին։

Պատերազմից առաջ Միության մեջ 650 հազար ուսուցչուհիներ, 73 հազար բժշկուհիներ, 150 հազար ինժեներուհիներ կային։ Միայն 1944 թվին պարգևատրված 5.227 դպրոցական աշխատողներից 3.951 հոգի կանայք էին։

Գիտության, կուլտուրայի և արվեստի ասպարեզներում մեծ նվաճումների են հասել նաև մեր Սովետական Հայաստանի կանայք։

Մեր ռեսպուբլիկայի տարրական, յոթնամյա ու միջնակարգ դպրոցների աշխատողների 63 տոկոսը կանայք են։

Հայկական ՍՍՌ Գիտությունների Ակադեմիայի ինստիտուտներում 244 կին գիտաշխատողներից 3-ը դոկտորի գիտական աստիճան ունեն, 33-ը գիտությունների թեկնածուներ են, 39 հոգի ավագ և 104 հոգի կրտսեր գիտաշխատողներ են, իսկ մյուսները աշխատում են լաբորատորիաներում։

Հայկական ՍՍՌ Առողջապահության ժողովրդական Կոմիսարիատի ցանցում աշխատող 227 գիտական աշխատողներից 96-ը կանայք են, որոնցից շատերը գիտա-



կան աստիճաններ ունեն։ Անշուշտ սրանով չի սպառվում մեր գիտության բնագավառի կին մարտիկների թիվը։

Բեղմնավոր աշխատանք են կատարում մեր կանայք արվեստի և գիտության բնագավառներում։ Մենք ունենք բազմաթիվ տաղանդավոր դերասանուհիներ, նկարչուհիներ, կոմպոզիտորներ, գրողներ ու բանաստեղծուհիներ։

Սովետական կանայք առաջնակարգ տեղ են գրավում մեր կյանքի բոլոր ասպարեզներում, այդ թվում և գիտության ամենաբազմազան ճյուղերում և ամենուրեք չեն խնայում իրենց ուժերն ու կարողությունները մեր Հայրենիքի հետագա ծաղկման ու ամրապնդման համար մղվող պայքարում։

## ՊԱՐՏԻԱՅԻ ԵՎ ԿԱՌԱՎԱՐՈՒԹՅԱՆ ՀՈԳԱՏԱՐՈՒԹՅՈՒՆԸ ԿՆՈՋ ՆԿԱՏՄԱՄԲ

Պարտիան և Սովետական կառավարությունը մեծագույն հոգատարություն են ցուցաբերում կնոջ՝ նրա առողջության, նրա երեխաների նկատմամբ։ Այդ հոգատարությունը դրսևորված է Սովետական կառա-

դաստիարակման և կոփման ուղղությամբ։

Նախաձեռնող՝ աշխատանքի մեջ, հերոսուհի ռազմաճակատում և թիկունքում, բոցավառ հայրենասիրուհի, հավատարիմ կին և ջերմ սիրող մայր,—այսպիսին է սովետական կնոջ պատկերը ամբողջ ժողովրդի աչքում։

Թշնամու նկատմամբ ունեցած ատելությունը և վառ հայրենասիրությունը մեր կանանց մղեցին անօրինակ սխրագործությունների։ Պատերազմի առաջին իսկ օրը հազարավոր կանայք կամավոր մտան Կարմիր Բանակի շարքերը և մեր մարտիկների հետ համաքայլ ծառացան թշնամու դեմ։

Նրանցից շատերը դարձան սանիտարուհիներ ու գթության քույրեր, սնայպերներ ու կապավորներ, տանկիստներ ու օդաչուներ։ Ամբողջ երկրին հայտնի է Սովետական Միության Հերոս օդաչու Եվդոկիա Նոսալի անունը։ Անմահության փառքով են օծված քաջարի սնայպերներ՝ Նատաշա Կովշովայի և Մարուսյա Պոլիվանովայի անունները, որոնք ավելի քան 300 ֆաշիստ են սպանել։

Մեր հերոսուհիները աներկյուղ կռվում էին հակառակորդի դեմ նաև պարտիզանական ջոկատներում։ Ո՞ւմ չի հայտնի պարտիզանուհի Զոյան։



Երբ նրան սպանում էին դահիճները, նա հպարտության վեհ զգացումն ու անսահման հավատը հոգում ասաց.

— Մնաք բարով ընկերներ, կռվեցե՛ք, մի վախեցե՛ք: Մեզ հետ է Ստալինը. Ստալինը կգա՛:

Հայրենական պատերազմի դաշտերում հայրենասիրության հրաշալի օրինակներ տվեցին նաև հայ կանայք։ Նրանք ևս մասսայաբար մտան Կարմիր Բանակի շարքերը և հերոսաբար կռվեցին մի շարք ռազմաճակատներում։ Ռեսպուբլիկայում հայտնի են Ս. Պետրոսյանի, Է. Հայրապետյանի, Հ. Կիլիչյանի, Ս. Զաքարյանի, Ս. Չիլինգարյանի և շատ ուրիշների անունները։ Հայրենիքը զարդարեց նրանց կրծքերը շքանշաններով ու մեդալներով։

Անձնվեր աշխատանք կատարեցին թիկունքի կանայք։ Փոխարինելով ռազմաճակատ մեկնած իրենց ամուսիններին, եղբայրներին ու հայրերին, նրանք անդուլ աշխատանքի անցան հանուն մեր արդյունաբերության և գյուղատնտեսության արտադրանքի էլ ավելի բարձրացման։

Նրանցից շատերը աճեցին և համարձակորեն առաջ քաշվեցին պատասխանատու

աշխատանքների, գործարաններում և կոլ-
խոզներում։

✻✻✻

Ֆաշիստական Գերմանիայի և Ճապոնական իմպերիալիստների դեմ մղած պատերազմը հաղթականորեն ավարտելուց հետո սովետական ժողովուրդները բոլշևիկների մեծ պարտիայի ղեկավարությամբ ձեռնամուխ են լինում նոր հնգամյակի կատարմանը։

«Նոր հնգամյա պլանի հիմնական խնդիրներն են՝ վերականգնել երկրի տուժած շրջանները, վերականգնել արդյունաբերության և գյուղատնտեսության նախապատերազմյան մակարդակը և այնուհետև քիչ թե շատ զգալի չափով գերազանցել այդ մակարդակը» (Ստալին)։

Այս հնգամյակում հատուկ ուշադրություն է նվիրվելու լայն սպառման ապրանքների արտադրության ընդլայնմանը, աշխատավորների կենսամակարդակի բարձրացմանը, գիտահետազոտական հիմնարկների շինարարության ընդարձակմանը և այլն.

Ժողովուրդների առաջնորդ ընկեր Ստալինը մեր Հայրենիքի առաջ խնդիր է դրել՝ կազմակերպել ժողովրդական տնտեսության նոր հզոր վերելք, առաջիկա տարիների ըն-



թացքում մեծ չափերով բարձրացնել չուգունի, պողպատի, ածխի, նավթի արտադրանքը, որը կապահովի մեր Հայրենիքը ամեն տեսակ պատահականություններից։

Կասկած չկա, որ սովետական կանանց բազմամիլիոն բանակը, ինչպես պատերազմի տարիներին, այնպես էլ այժմ, կրկնապատկված եռանդով և ոգևորությամբ, մեր բոլոր աշխատավորների հետ միասին ձեռք-ձեռքի տված կգործադրեն իրենց բոլոր ուժերը՝ Մեծ Ստալինի առաջադրած խնդիրները պատվով ու անթերի կատարելու համար։

***

Ա՜խ, աղջիկներ աչագեղ,
Եվ դուք կանայք հայրենի,
Ձեզ եմ երգում ամեն տեղ՝
Ձեռիս վարդեր ու գինի:

Թեև շատ եք ձեր սիրով
Արցունք խլել իմ աչքից,
Բայց դեռ անչար կարոտով
Ձեզ եմ երգում ես նորից:

Դուք ինձ հույս ու հաց տվիք
Կովի մռայլ օրերում,
Իմ վերքը դո՛ւք կապեցիք
Մահին մոտիկ դաշտերում:

Շոյում էիք քրոջ պես,
Մոր նման փայփայում.
Ձեր աչքերից սիրակեզ
Ոսկի հույսն էր ինձ նայում:

Հիմա ծաղկում եք նորից
Իմ երազնե՜ր, իմ քույրե՜ր,
Դուք կաքավներ իմ անբիծ,
Դուք իմ երկրի ծաղիկներ:

ՀՈՎՀ. ՇԻՐԱԶ

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ

Էջ
1. Ի. Վ. Ստալինի Երկերի հրատարակման մասին . . . . . . . 3
2. Կանանց միջազգային օրը . . . 13
3. Հովհ. Շիրազ.— Բանաստեղծություն . . . . . . . . . . 30

Պատասխանատու խմբագիր՝ Ս. ԱՐԵՇՅԱՆ

*ՎՖ 00566 պ. № 377 տիրաժ 10.000*
*Ստորագրված է տպագրության 5/III 1946 թ.*

Հայկական ՍՍՌ Ժողկոմսովետին կից Պոլիգրաֆ. և հրատ. վարչ. № 2 տպարան, Երևան